*Տէր եւ Տիկին Գ. Արապեան, Պ. Յակոբ Հաճի Մանուկեան սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց քրոջ եւ մօրա քրոջ*

**ՕՐ. ՄԱՐԻԱՄԻԿ ԱՐԱՊԵԱՆԻ**
(մեծ Նոր Գիւղցի)
*դառնաղէտ մահը 50 տարեկան հասակին:*
*Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր կէսօրէ վերջ ժամը 2ին Հայոց եկեղեցին, 15* Rue Jean Goujon, *ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի* Pantin*ի գերեզմանատունը:*
ԾԱՆ.— Մասնաւոր ժահազդ ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:
Յուղարկաւորներու Թափօրը տունէն (36 Rue Bouret, Փարիզ) կը մեկնի ժամը ճիշդ 1.30ին մասնաւոր օթօքարով:



Le Gérant H STEPHAN



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (11)

# ՆԱՁԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 20.— «ԴՈՒՆ ՈՍՏԻԿԱՆԱԿԱՆ ՆԱԽԱՐԱ՞Ն ԵՍ»

— «Վեհափառը կը գտնուի Չիրիլի ապարանքին մէջ: Մինչեւ առտու չէր կրցած քնանալ: Դէպքերը շատ ազդած են վրան: Կը հարցնէ թէ դէպքերուն պատրաստութիւնը 3 օր առաջ տեղեկացուած ըլլալով հանդերձ, ի՞նչպէս չկրցաք արգիլել: Անկարելի՞ էր առաջքն առնել դէպքի մը, որուն պատրաստութեան մասին նախապէս տեղեկութիւն առնուած է: Չըլլա՞յ թէ ոստիկանական նախարարն ալ խռովարարներուն հետ միացած ըլլայ: Ոստիկանական նախարար Նազըմը ամէն առթիւ կը յանկերգէ իր խղճմտութիւնը, իր ուղղամտութիւնը եւ չես գիտեր ի՞նչը»:

Ընդհակառակն, ես ապուշութեան նշան եմ համարեր ինքնագովութիւնը, ինքն իր մասին խօսիլը եւ երբեք չեմ գիտեր թէ ե՞րբ ինքզինքս գովեր եմ...: Բաղըպ պէյ շարունակեց.

— Հիմա Նազըմը կը հանի՞ իր բրածին:Արդէն գուշակած էի թէ դաշնակցած է Եպարքոսին հետ, ահա ամէն բան երեւան ելաւ: Հնազանդելով Եպարքոսին փափաքին, դէպքերուն մէջ զինուոր ալ խառնեցին եւ իմ անձս ալ մեղսակից գարձուցին օտարներուն աչքին: Ասով հասկցուեցաւ որ Եւրոպացիներուն միջամտութիւնը կ'ուզեն հրաւիրել: Երբ դուք ալ Եպարքոսին միացաք եւ անպայման զինուորական ուժ պահանջեցիք, տակաւ ապացոյց մը եղաւ որ այդ միտքը ունիք: Այսպէս կ'ըսէ Վեհ. Սուլթանը: Եւ հիմա ձեր պատասխանին կը սպասէ:

Երբեք չազդուեցայ լսելով այս անիրաւ յանդիմանութիւնները եւ անտեղի հարցումները, որովհետեւ Ապտիւլ Համիտի կասկածամտութեան այս խայտառակ նշանները պարզապէս զզուանք կը պատճառէին ինծի: Արդէն ակամայ ընդունած էի ոստիկանական նախարարի պաշտօնը, եւ կ'աշխատէի այն յոյսով թէ երկրին ամէնէն վտանգաւոր մէկ շրջանին պիտի կարենամ ծառայութիւն մը մատուցանել, այսպէսով կեանքէն ձանձրացած, վաստակաբեկ վիճակի մը մատնուած էի: Կը մտածէի որ, երբ ես այսպէս անիմաստ հարցումներու պատասխանելով զբաղած եմ, ո՞վ գիտէ, Պոլսոյ, Բերայի եւ Սկիւտարի շրջանակներուն մէջ ի՞նչքան արիւն կը թափի, նախարարութեան ի՞նչ սոսկալի հեռագիրներ կը ղրկուին: «Ժուռնալ»ներով ի՞նչեր կը տեղեկագրուին եւ ի՞նչ օգնութիւններ կը խնդրեն: Անշուշտ բոլոր ատոնք կը մնային անհետեւանք:

Իսկ Բաղըպ պէյ կը կրկնէր հարցումը.

— Ի՞նչ կ'ըսէք, Վեհափառը կը սպասէ:

Հանդարտ՝ պատասխանեցի.

— Այդ հարցումներուն պատասխանը կրնամ տալ միայն այն ատեն, երբ անդորրութիւնը վերահաստատած կ'ըլլամ: Երբ այսպիսի հարցերով ժամանակ վատնեմ այստեղ, դէպքերը կը ծաւալին անդին: Կը խնդրեմ, որ թոյլ տրուի ինծի երթալ զբաղիլ իմ գործերովս: Եթէ Վեհափառը իր վստահութիւնը վերցուցած է վրայէս, կրնայ ուրիշ մը նշանակել իմ տեղս, այն ատեն ես ժամանակ կ'ունենամ պատասխանելու իր բոլոր հարցումներուն:

Բաղըպ պէյ պատասխանս տարաւ Վեհափառին: Քառորդ մը յետոյ վերադարձաւ:

— Վեհափառը թոյլ կուտայ որ մեկնիք եւ ըսաւ.

— «Խելքը գլուխը թող հաւաքէ, սոր անոր անձնական շահերուն ու ցանկութիւններուն գործիք չդառնայ, շուտով անդորրութիւնը վերահաստատէ, հակառակ պարագային թող գիտնայ որ ամենախիստ պատասխանատուութեան կ'ենթարկուի»:

— Վեհափառը, երբ զինուոր ուղելուս պատճառը իր դէմ թշնամի նպատակի մը վերագրէ, այս անբաւական ուժերով բնականաբար շատ չ… կը վերահաստատուի ապահովութիւնը (!):

Այսպէս ըսի եւ առանց պատասխանի մը սպասելու՝ մեկնեցայ: Ո… ղակի ոստիկանական նախարարութիւն գացի եւ խաղաղութիւնը վերահաս… տատելու համար նոր միջոցներ խորհեցայ:

### 21.— «Է՞Յ ՄԻՒՍԼԻՄԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐՍ...»

Հեծեալ ոստիկաններու հաղորդած տեղեկութիւններուն համաձայն, խռովարարները խիտ շարքերով դուրս ելած էին եկեղեցիէն եւ կը քալ… Պազը Ալիի վրայ: Երբ դեռ անոնք Տիվան Եօլու հասած չէին, հեծեալ… տիկաններու ուժերով թեւ թեւ յարձակեցայ եւ առանց զէնք մը արձա… լու, յարձակումները կրկնելով ու սաստկացնելով, վերջապէս յաջողե… նահանջի դատապարտել, դէպի իրենց եկեղեցին ապաւինելու ստիպել: … միտէին վարիչները, տեսնելով որ ապարդիւն անցան 3 օրուան ընթացք… թափուած արիւնը, արձակուած գնդակները եւ պոռչտուքները, վերջապ… հասկնալով որ չպիտի հասնին իրենց նպատակին, այն ատեն մտածե… իրենց ամբողջ ուժը, միջոցները եւ չարամտութիւնը գործածել գրգռե… համար ժողովուրդը, եւ սաստկացնելու համար խռովութիւնը:

Այն արհեստաւոր Հայերը, որոնք բացեր էին խանութները, սպառն… լիքի տակ ստիպուեցան դարձեալ փակել: Միւս կողմէ, լուր կը տարածե… թէ անգլիական նաւատորմը Նեղուցներէն անցած ու Պոլսոյ մօտեցած … Եթէ այդ նաւատորմը չհասնէր, դարձեալ կարեւորութիւն չունէր իրենց … մար, որովհետեւ, ամէն գնով իրենց նպատակին հասնելու համար, կ'ըսէ… թէ միայն Պոլսոյ մէջ չէ, որ յեղափոխութիւն պիտի ծագի, այլ նաեւ բո… հայաբնակ գաւառներուն մէջ, եւ այս յեղափոխութիւնը չափազանց ծ… րակշիռ պիտի ըլլար, ինչպէս կը բացատրէին աղին անդին, պատեր… վրայ փակցուած յայտարարութիւններով եւ այլ միջոցներով:

(Շար.)



### ՄԱՀ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Վալանսի հայրենակիցներէն բնիկ Եոզկատցի Պ. Կարապետ Անտոնեանի զաւակը Պ. Երուանդ Անտոնեան, 26 յուլիս 1931ի կիրակի օր իր մահկանացուն կնքեց 23 տարեկան ծաղիկ հասակին մէջ, կարճատեւ հիւանդութենէ մը վերջ իրենց բնակարանին մէջ։

Յուղարկաւորութեան արարողութիւնը տեղի ունեցաւ հանդիսաւորապէս 28 յուլիսի երեքշաբթի օրը ի ներկայութեան սգակիր ազգականներու եւ բարեկամներու խուռնբազմութեան մը, եւ մարմինը ամփոփուեցաւ քաղաքին գերեզմանատան մէջ։

Յուղարկաւորութեան արարողութիւնը կատարեց Տ. Պսակ Քհ. Սարգիսեան, եւ գեղեցիկ դամբանականով մը վեր հանեց հանգուցեալին արժանիքները։

Քսանհինգէ աւելի ծաղկեպսակներով ծածկուած էր դագաղը. ողբացեալ հէգ երիտասարդը իր բնաւորութեամբ եւ նկարագրով սիրուած էր գաղութիս բոլոր խաւերէն։ Կը թողու զինքը սգացող հայրը եւ մայրը, եղբայրը՝ Յակոբ, քոյրը Նուարդ, եւ քեռայրը ու քոյրը Տէր եւ Տիկ. Քէհեան եւ շատ մը ազգականներ։

ՍԳԱԿԻՐ ՄԸ



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (17)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 29.— ԹԼՓԱՏՈՒԱԾ ԼՐՏԵՍՆԵՐ

Դարձեալ Լոնտոնի կոմիտէին նախաձեռնութեամբ, Նիւ Եորքի մասնաճիւղը կը թլփատէ երեսուն Հայեր, որոնք ջուրի պէս քիւրտերէն կը խօսէին։ Յետոյ քրտական տարազ հագցնելով, իսլամական անուններով կը ղրկէ Անատոլու խորերը։ Այս խումբէն Արաբկիրի Քէշիշլէր թաղէն Գասպար Կիրակոս, որ կը կրէր Մէհմէտ Ալի կեղծանունը, կ'ուզէ Մէտինէ երթալ, սակայն ոստիկանութիւնը կը կասկածի եւ քննութիւն կը կատարէ, ի վերջոյ հաստատելով, որ Հայ է։ Այս ձեւով կը ձերբակալուին նաեւ միւս 29 ընկերները։ Սխի բնակիչներէն Պէշակէզեան հրէական կերպարանքով եւ Իսրայէլ անունով Մերսին ցամաք կ'ելլէ, սակայն կատարուած քննութիւնները կը հաստատեն, որ Հայ մըն է։

Դարձեալ այս կարգէն, սեւ ոչխարի մորթով գլխարկներ դրած, «քրմաչիփթէ» հրացաններով զինուած քառասուն Հայեր Լոնտոնէն Կիպրոսի ճամբովՀալէպի նահանգինՍուէյտիոյլեռներուն ստորոտը ցամաք կ'ելլեն և այդ շրջանին մէջ յեղափոխութիւն յարուցանելու կ'աշխատին։ Արդարեւ, ինչպէս վերջէն հասկցուեցաւ պատճառը, այդ ատենները հայաբնակ այդ շրջաններուն մէջ դէպքերը կրկնուեցան, ապստամբութեան եւ յեղափոխութեան նշաններ տեսնուեցան։ Թէեւ այդ շարժումներէն մաս մը զսպուեցաւ, սակայն դժբախտաբար քանի մը տեղերու մէջ կարեւոր կռիւներ տեղի ունեցան եւ շատ արիւն թափուեցաւ։

### 30.— ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ՍԱՐՍԱՓԻ ՄԱՏՆՈՒԱԾ

Այս արիւնալից դէպքերուն ամբողջ մանրամասնութիւնը պիտի տեսնուի իր կարգին այս իմ յուշերուս մէջ։ Միայն թէ Ելտըզի նոյն օրերու վիճակը, այս դէպքերուն չափ հրահանգիչ ըլլալով, կացութիւնն ու այս շարժումները լուսաբանելու համար, կ'ուզեմ բացատրել Ապտիւլ Համիտի և պալատականներուն մտայնութիւնը եւ վարչագիտութիւնը, կը փափաքիմ ապագայ սերունդներուն ներկայացնել թէ ի՛նչպէս կը կառավարէին անոնք այս սիրելի երկիրը։

Ես էի, որ Հայոց առաջին յեղափոխութեան ծագումէն սկսեալ, կուրծք ցցելով այնպիսի դժուարութիւններու դէմ, որոնց մարդկային ուժը չպիտի կրնար երբեք հանդուրժել, մահը արհամարհելով եւ ամենայն անձնազոհութեամբ գիշեր ցերեկ, անդուլ անդադար աշխատելով, աքնելով քրտնելով, անհուն յոգնութիւններով, 3—4 օրուան մէջ Հայոց ապստամբութիւնը խորտակեցի, ապահովութիւն եւ խաղաղութիւն հաստատեցի։ Եւ ահա Սուլթանին երկրորդ քարտուղարը, Իզզէթ ստորագրութեամբ եւ 22 սեպտեմբեր311 Թուակիր (1895) հեռագիրով մը, կը հրաւիրէր զիս յաջորդ օրը ժամը 6ին ներկայանալ իր պաշտօնատեղին, ինչպէս հրամայած էր Վեհափառը։ Որոշեալ ժամուն, մտայ Իզզէթ փաշայի սենեակը։ Այնտեղ կը գտնուէին վճռաբեկ ատեանի նախագահը Լէպիփ էֆէնտի, «կիտիշ միւտիւրի» Մահմուտ էֆէնտի եւ ուրիշ երկու անծանօթ անձեր։

Իզզէթ փաշա անօթահար ձեւով մը ըսաւ ինծի.

— Կը ներէք, Սուլթանը մեզի հրաման տուած է որ ձեզի քանի մը բաներ հարցնենք։ Թէեւ մենք երբեք կասկած չունինք ձեր մասին, սակայն ստիպուած ենք սուլթանական հրամանը կատարել եւ Լէպիփ էֆէնտիի հետ պիտի հարցաքննենք ձեզ, ատոր համար անօթապարտ կը զգանք մեզ։ Ոչ ոք կը կասկածի ձեր վրայ։

Յետոյ կանչեց սպասաւորը.

— Գոցէ՛ դուռը, եւ մարդ մի թողուր ներս մտնել։

Այդ պահուն տեսայ, որ Լէպիփ էֆէնտիին քովը նստած երկու ձեռը պատրաստուեցան նօթագրելու։

Լէպիփ էֆէնտին ճշմարտախօս, լուրջ ու պարկեշտ, զարգացած մըն էր։ Դարձաւ Իզզէթ փաշային եւ ըսաւ.

— Ես վստահութիւն ունիմ Նազըմ փաշայի բարեխղճութեան վրայ։ Ձեզ փափաքիր հարցնել ինչ որ Սուլթանը կը հրամայէ։ Թող ուրիշ մէկը հրամայէ հարցաքննել Նազըմ փաշան։

Իզզէթ փաշա պատասխանեց.

— Ոչ ոք կը կասկածի Նազըմ փաշայի անկեղծութեան եւ բարեծութեան վրայ։ Արդէն եթէ այս հրամանը տրուեցաւ, պարզապէս հերքելու համար է այն զրպարտութիւնները, զորս մէկ քանի շահախնդիր մարդիկ վերագրած են Նազըմ փաշայի։ Վեհափառն ալ վստահ է իր մասին։

Իզզէթ փաշա քաղաքավարութեան համար էր, որ այդպէս խօսեցաւ։ Միթէ չէ՞ր գիտեր իր Վեհափառ կայսեր ի՞նչ ապրանք ըլլալը։ Յետոյ [...]դառնալով ըսաւ.

— Երբ, հայկական դէպքերուն պատրաստութենէն երեք օր [...]լուր առնելով հանդերձ կարելի չեղաւ արգիլել ու զսպել, և առատ [արիւն հոսեցաւ] մայրաքաղաքին մէջ, կասկած ծագեցաւ որ պատճառը նազան կողմերէ կատարուած ազդեցութիւններն ու սպառնալիքներն են։ Կասկածը փարատելու համար, անհրաժեշտ է որ լուսաբանութիւն մը [տաք] այդ մասին։

Արդեօք ի՞նչ ըսել կ'ուզէր։ Ոչինչ կը հասկնայի։ Ապշած կը նայէի Իզզէթ փաշայի երեսը։

— Քիչ մը յստակ խօսեցէք, կը խնդրեմ, ըսի։ Իզզէթ փաշա գլխ[ով] Լէպիփ էֆէնտին հրաւիրեց քովնտի սենեակը եւ ըսաւ.

(Շար.)

«ՆԱՀԱՏԱԿ ԳՐԱԳԷՏՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»
*Լոյս տեսաւ Ն. Գ. Բ.ի առաջին շարքին չորրորդ հատորը*
*ԳԵՂԱՄ ԲԱՐՍԵՂԵԱՆԻ ամբողջական գործը*
Արձակ էջեր, պատմուածքներ ու զանազանք

## Դ Ա Շ Տ Ա Հ Ա Ն Դ Է Ս

*Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ*
*Այսօր կիրակի Քլամառի անտառին մէջ*
*կը խօսին՝ Պ. Պ. Կ. ԳԷՈՐԳՋԱՆԵԱՆ և ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ*
ընծրեւի պարագային ապաստարան:
Հաղորդ. միջոցներ.— Hôtel de Ville կամ Porte de Versaillesէն առնել Թիւ 89 ճանրակառքը եւ իջնել վերջաւորութիւն, ուր ուղեցոյցներ պիտի սպասեն:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՄԷՋ

*Կիւրինի Հայր. միութեան կողմէ: 22 Օգոստ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Էմիլ-Զոլաի շքեղ սրահին մէջ:*
*Ղեկավարութեամբ դերասան ԹՐԱԳՕՇի կը ներկայացուի*
ՇԻԼԼԷՐԻ ԱՒԱԶԱԿՆԵՐԸ




IMPRIMERIE - **MASSIS** -ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN




«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (23)

# ՆԱՋԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 39.— ԽՆԴՐԱԳԻՐՍ ԱՇԽԱՐՀԻ ՇՐՋԱՆԸ Կ'ԸՆԷՐ...

Յաջորդ օրը դարձեալ բանտ գացի, բանտապահներու պետին մօտեցայ, եւ հարցուցի թէ ո՞ւր է հայրս, կ'ուզեմ անպայման տեսնել: Նոյն կոպտութեամբ պատասխանեց:

— Հայրդ ոստիկանատունն է, անկէ դուրս չելած՝ չես կրնար տեսնել:

Եւ իր սենեակը մտաւ:

Առաջին անգամ էր, որ կը լսէի ոստիկանատուն բառը: Այդ թուականին մեր մէջ ոստիկանական կազմակերպութիւն չկար տակաւին: Իմաստը հասկնալու համար՝ դիմեցի բանտապահի մը, որ բացատրեց ինծի: Ոստիկանատունը փոքրիկ սենեակ մըն է, ըսաւ, ուր կ'արգելափակեն ամէն կարգի յարաբերութենէ զրկուած մարդիկ, որպէս զի մարդ չկարենայ տեսնել զանոնք: Այս տեղեկութիւնը ստանալէ յետոյ, անօգուտ համարեցի այլ եւս սպասել: Սկսայ լրտեսել ոստիկանական հրամանատարը: Երկու ժամ անցաւ, հրամանատար փաշան չերեւցաւ: Յանկարծ վարի յարկէն փողի ձայն մը լսուեցաւ: Եաուզեռ մը սկսաւ: Ամէն մարդ, իրենց ձեռքին մէջ մէկ մէկ խնդրագիր, պատրաստուեցան դիմաւորելու հրամանատար փաշան: Վերջապէս փաշան, գոռոզ քայլերով ու շարժումներով վեր բարձրացաւ սանդուղներէն: Ժամբուն վրայ, սրահին մէջ հաւաքուած մարդոց ձեռքէն թիկնապահ մը մէկիկ մէկիկ սկսաւ հաւաքել խնդրագիրները: Երբ բազմութիւնը ցրուեցաւ, մօտեցայ այն թիկնապահին, որ առջի օր խնդրագիրս առեր էր: Հարցուցի թէ ի՛նչ եղաւ խնդրագիրս:

— Խնդրագիրներուն պատասխանը կուտայ միայն դիւանապետը, գնա՛ անոր հարցուր, ըսաւ:

Փնտռելով փնտռելով գտայ Դիւանատունը: Ըսին թէ խնդրագիրս երկու ժամ առաջ ճամբայ հաներ էին դէպի հարցաքննութեան դիւանը: Վազեցի հարցաքննութեան դիւանը, ներս մտայ: Մօտ 40 տարեկան, սեւ մօրուքով, թարմ դէմքով մարդ մըն էր հարցաքննիչը, որ կը կոչուէր Արիֆ պէյ: Հարցումս դեռ չէի աւարտած, երբ կատարեալ քաղաքավարութեամբ ընդմիջեց զիս.

— Հասկցայ թէ ի՛նչ կ'ուզես, նստէ նայինք, տղա՛ս, ըսաւ եւ աթոռ մը ցոյց տուաւ:

### 40.— ՖԷՍԵՐՈՒՆ ԾՈՊԸ ԻՆՉՈ՞Ւ ԿԸ ՓՐՑՆԵՆ

Ինչպէս անապատներուն մէջ ծարաւէն ուշաթափ, մահուան սահմանին հասած դժբախտ մէկը, որ յոյսով եւ ուժով կը լեցուի ի տես զով ու կանանչ ովասիսին եւ ի լուր աղբիւրի մը բիւրեղ խոխոջիւնին, այնպէս ալ հաճոյք զգացի եւ ծայրայեղ յուզումէս աչքերս թրջեցան: Ոստիկանական հրամանատարութեան շէնքին մէջ այն կոպիտ ընթացքը, որ կը կրկնուէր երկու օրէ ի վեր, բաղդատելով այս մարդկային ու քաղաքավար ընդունելութեան հետ, զարմանքի մէջ էի ինկեր: Շնորհակալութիւն յայտնելով, նստայ:

Քանի վայրկեան չանցած, երեք ոստիկաններու հսկողութեան տակ ներս մտաւ հայրիկս: Հարցաքննիչը հրամայեց, որ ոստիկանները դուրսը սպասեն: Ցետոյ բարեացակամ ընդունելութիւն մը ըրաւ հօրս, անոր ցոյց տալով աթոռ մը իր մօտիկը: Բացատրելէ ետքը իմ տառապանքս ու նեղութիւններս, ըսաւ.

— Փա՛ռք Աստուծոյ, հոգ ընելու բան մնացած չէ, Աստուծմով մը օրէն ազատ կ'արձակուիս:

Հօրս ֆէսին վրայ ծոպ (փիւսկիւլ) չկար: Ցետոյ միտքս ինկաւ որ հայրս մերժած էր մեր տունի կերակուրը, զոր ղրկած էինք առ... Հարցուցի ատոնց պատճառը:

Հայրս խնդաց զառնօրէն:

— Տղուս հարցումներուն կրնա՞մ պատասխանել, ըսաւ հարցաք...

— Ինչո՞ւ չէ: Սենեակին մէջ մեզմէ զատ ոչ ոք կայ: Կրնաք...

Հայրս սկսաւ խօսիլ.

— Ֆէսին ծոպը կը փրցնեն անարգելու համար: Թէեւ կ'ըս... ծոպն ու ապարօշը (սարըք) կը խլեն, որպէսզի բանտարկեալները ձուլին անձնասպան ըլլալ, բայց մենք չենք հաւատար այդ պատճա...նութեան: Վասնզի հիմա երկրին վարիչներուն միակ նպատակն է բոլոր անոնք, որ դաւաճան կը համարուին՝ հայրենիքին համար իրե... տարած ծառայութեան պատճառով միայն: Ինչո՞ւ մերժեցի կերակո... ղրկեր էիք տունէն: Ձեր կերակուրը բանտին մէջ գետինը թափած յետոյ գետնէն առնելով, հողով խառն դրած էին ամաններուն մէջ: ...ցուցի բանտապահին, որ կերակուրը կը բերէր, թէ ինչո՞ւ հող ... են կերակուրին: Ըսաւ թէ ամաններուն տակ ծուկ փնտռելու ստի...ուած են պարպելու կերակուրը, եւ քննութենէ յետոյ՝ նորէն ամա... լեցնելու: Մ'ի՞թէ կարելի՞ է ուտել կերակուրը, այդ քննութենէն ... Ահա թէ ինչո՛ւ ետ ղրկեցի: Դուն եթէ երբեմն գաս զիս տեսնելու... քանը կը բաւէ, տղաս:

Մէկ շաբթուան ընթացքին, երկու օրը մէկ անգամ, ուրեմն եր... տեսնուեցայ հօրս հետ, միշտ հարցաքննիչին սենեակին մէջ:

(Շար...

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (29)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 51.— ՊԱԼԱՏԸ ԽՌՈՎՔԻ ՄԷՋ

Յօդուածս ջղայնութիւն պատճառեց պալատին մէջ: Պաշտօնապէս եւ բերանացի հաղորդուեցաւ թէ արգիլուած է այսուհետեւ որեւէ բան գրել թերթերուն մէջ այդ հարցերուն մասին: Մենք ալ սկսանք «Իսթիքլալ» թերթը լեցնել, առաջուան պէս, զանազան թարգմանութիւններով եւ քրոնիկներով, որոնք պալատին համար վնասակար չէին համարուեր:

Այդ թուականին «Իթթիհատ» թերթը կը գտնուէր Աչմէտ Միտհաթի քեռորդին՝ Ճէվտէթ պէյի տնօրէնութեան եւ պատասխանատուութեան տակ: Ճէվտէթ պէյ դիմելով Նամըք Քէմալի, կը խնդրէր, որ ընդունի իր թերթին խմբագրութիւնը: Ընդունելով Նամըք Քէմալի միջնորդութիւնը, խմբագրապետ դարձայ «Իթթիհատ» թերթին: Թարգմանիչէ մը զատ ուրիշ օգնական չունէի: Թերթը լեցնելու համար, ստիպուած էի մինչեւ ուշ ժամանակ աշխատիլ տպարանին մէջ: Յաճախ ալ, վերարկուովս փաթթուած, «քանափէ»ի մը վրայ կ'երկննայի ու կը լուսցնէի: Այդ շրջանին խռովութիւնները, որոնք սկսած էին Պոսնայի եւ Հերսէքի մէջ, տարածուեցան Պուլկարիոյ, Գարատաղի եւ Սերպիոյ մէջ, յետոյ տեղի ունեցան պատերազմներ: Համասլաւականութեան քաղաքականութիւնը յաջողութեամբ ամէն կողմ տարածումներ ծնաւ: Եպարքոս Միտհաթ փաշա մէկ կողմէն կ'աշխատէր Սերպիոյ եւ Պուլկարիոյ հետ համաձայնութեան մը գալ, միւս կողմէ երեսփոխանական ժողովին բացման հրամանը ստանալ: Կարճ ժամանակ մը յետոյ բացուեցաւ խորհրդարանը: Խորհրդարանի վիճաբանութիւնները գրի առնելու համար, գլխ խմբագիր նշանակեցին «Թաքվիմը Վագայի» թերթին: Այս թերթին մէջ իբրեւ սրբագրիչ կ'աշխատէին Զիհնի եւ Սայիտ, որոնք նշանաւոր էին ոչ միայն իբրեւ ուսուցիչ, այլ եւ իբրեւ արաբական գրականութեան լաւագոյն գէմքերը:

Խորհրդարանի վիճաբանութիւնները գրի կ'առնուէին տառացի եւ կը հրատարակուէին պաշտօնապէս:

Ուստի կ'աշխատէի, որ սխալ կամ պակաս բան մը տեղի չունենար նօթագրութեանց մէջ: Բայց եւ այնպէս, քանի մը երեսփոխաններ, նիստէն վերջը, քովս կուգային եւ կ'ուզէին հասկնալ թէ իրենց խօսքերը ճշգրտութեամբ եւ ամբողջութեամբ նօթագրուա՞ծ են: Եւ այս առթիւ կ'աշխատէին արձանագրութեանց մէջ խօթել խօսքեր, զորս չէին արտասանած նիստերու ընթացքին: Նոյնիսկ երբեմն ինծի կ'ըսէին.— «Ինչպէս եղաւ մոռցայ խորհրդարանին մէջ ըսել, կը խնդրեմ, վաղուան թիւով սա խօսքերս ալ աւելցուր»: Եւ այսպիսի զարմանալի առաջարկներ:

### 52.— «ԻԹԹԻՀԱՏ»Ը ԴԱՐՁԱՒ «ԹԵՐՃԻՄԱՆԸ ՀԱԳԻԳԱԹ

Եւ ահա ոստիկանական նախարար Էօմէր Ֆէյզի փաշային զրկուեցաւ երկու պատրաստ «ժուռնալ», այն ամբաստանութեամբ թէ եպարքոս Միտհաթ փաշա, իր վայելած ընդհ. յարգանքին ու վստահութեան շնորհիւ երիտասարդութիւնը իր կողմը շահելով, կ'ուզէ շուտով գիկտատուրա յայտարարել:

Այս լուրին վրայ, 24 յունուար 1294ին (1878), երկուշաբթի օր մը, Տոլմա Պաղչէի պալատը հրաւիրեցին Միտհաթ փաշան եւ հրաժարեցնելէ յետոյ սահմանադրութեան 113րդ յօդուածին համաձայն, Թուրքիայէն վտարման որոշում տուին եւ «Իզզէտտին» շոգենաւը դնելով Պէնկազի զրկեցին:

Ժողովուրդը խոր վիշտի մը մատնուեցաւ: Եւ ահա յանկարծ Նամըք Քէմալ պէյն ալ աքսորուեցաւ Միտիլլի: Կարելի չէ երեւակայել վիշտին յուզումը, զորս զգաց ժողովուրդը այն ատեն: Այսպիսի շրջանի մը, մտածելով վտանգին մասին կը նշանակէ միայն փախկոտութիւն:

Բնականաբար չլռեցի, եւ իմ զգայարանքներովս զգալով այն ընդվզումը, զոր պատճառեց Նամըք Քէմալի եւ Միտհաթ փաշայի աքսորը, խիստ յօդուած մը գրեցի: Պահանջեցի պարզել աքսորման պատճառները հրաւիրեցի կառավարութիւնը, որ ժողովուրդը լուսաբանէ եւ հանդարտեցնէ:

Կայծակի ազդեցութիւն գործեց այս յօդուածս Պապը Ալիին ու գաւըրի գլխանին մէջ: Ամէն կողմ սկսան քննութիւն կատարել իմ մասին: Յաջորդ օրը քիչ մը ուշ գացեր էի տպարան: Թերթին տէրը, Ճէվտէթ պէյ, որ մինչեւ այդ՝ քաղաքավար վերաբերում մը ցոյց կուտար ինծի, զարմանք պատճառեց՝ երբ խոժոռադէմ ըսաւ.

— Հրամմեցէք, պէյ էֆէնտի, տեսնենք ի՞նչ պիտի ընէք հիմա: Ուրեմն է ի վեր, Պապը Ալիի բարապանը երեք անգամ եկաւ եւ ձեզ հարցուց: Եպարքոսը կ'աճապարէ, ձեզ տեսնել կ'ուզէ: Դժուար չէ հասկնալ թէ ինչ: Ձեր այդ յօդուածովը խորտակեցիք թէ ձե՛զ, թէ՝ էֆէնտիին (Աչմէտ Միտհաթ), թէ՛ մեր օրաթերթը: Հրամմեցէք Եպարքոսին մօտ:

Այդ վայրկեանին, ինչ որ ամէն բանէ աւելի վրաս գէշ ազդեց, Ճէվտէթ պէյի ընթացքն էր: Խիստ պատասխան մը տուի: Քիչ մը ինքզինքս ժողվեց, բայց ըսաւ.

— Յօդուածը գրած պահուդ, չմտածեցի՞ր թէ գործը մինչեւ ո՛ւր կրնար հասնիլ: Աչմէտ Միտհաթ, որ աքսորավայրէն նոր ազատած վերադարձեր էր, այս անգամ պիտի տեսնէս թէ որքան հեռու պիտի քշուի: Այդ կասկած մի ունենար: Ան գիտցաւ որ մեծ վտանգի մը առջեւ է եւ պահուեցաւ: Թազաւորին գլխանը կը փնտռէ զինք, բայց չի կրնար գտնել: կցուեցաւ որ փախէն տեղ մը պահուըտած է:

(Շար.)

Թուականէն մէկ շաբաթ առաջ, այս թիւը իջեր էր 36138ի: Ուրեմն մէկ շաբթուան ընթացքին,834իյաւելում մը:Յիշենք Թէնպաստընկալ անգործներու առաւելագոյն թիւն էր 51000 ապրիլի սկիզբները:

Անցեալ տարի, այս օրերուն, ամբողջ Ֆրանսայի անգործներու թիւն էր 950:

Միայն Փարիզի մէջ, կան 14125 անգործներ, իսկ Սէնի մնացեալ վայրերուն մէջ 11021:

Ֆրանսա մանող եւ անկից ելլող օտար աշխատաւորներուն թիւը կը պակսի: Օգոստոս 17էն 22 Ֆրանսա մտած են 259 օտարական աշխատաւորներ: մեկնած են 852 հոգի:

## Հացին գինը կը բարձրանայ

Ցորենի եւ ալիւրի բարձրացման հետեւանքով, որոշուած է հացին գինը բարձրացնել 2,25էն 2,30ի:

## Հայ վաճառական մը վիրաւոր

Էվրէօյի մօտերը ինքնաշարժ մը որ կը վարէր Պ. Մորիս Փոլիտորի, զարնուեցաւ ծառի մը: Պ. Փոլիտորի որ վէրքեր ստացեր էր գանկէն եւ մարմինին զանազան մասերէն, մեռաւ նոյն օրը, Էվրէօյի հիւանդանոցին մէջ:

Ինքնաշարժին մէջ, իրեն հետ կը գտնուէր Պ. Յովհ. Յովհաննէսեան, գոհարավաճառ, 39 Շաթօտէօն փողոց, որ ծնօտէն վիրաւորուած է:

## Ռուսիոյ ապարանքները Գերմանիոյ

Բայխսպանքի հետ կատարուող ջանակցութիւնները Գերմանիայէն Ռուսիոյ յանձնուած ապրանքներու մասին, յանգեցան ժամանակաւոր կարգադրութեան մը: Գերման կառավարութեան կողմէ երաշխաւորուած ռուսական մուրհակները պիտի զեղչուին Բայխսպանքի կողմէ, սակայն միայն այն մուրհակները որոնց վճարման պայմանաժամը կը լրանայ սեպտ. 15ին: Այս մուրհակներուն գումարը կը հասնի 150 միլիոն մարքի:

## Անշլուսը Լահէյի Ատեանին առջեւ

*Ժընեւէն տրուած լուրի մը համաձայն, սառյգ կը թուի թէ Լահէյի Ատեանը, մինչեւ սեպտեմբեր 2 պիտի կրնայ իր խորհրդակցական վճիռը յայտնել աւստրօ-գերման մաքսային համաձայնութեան մասին: Հետեւաբար, Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդը պիտի կրնայ զայն նկատի ունենալ իր յառաջիկայ վիճաբանութեանց ընթացքին:*

## Իտալիա եւ Վատիկանի վէճը

*Վատիկանի եւ Իտալիոյ միջեւ ծագած վէճը հարթուելու վրայ է: Տակաւին վերջնական համաձայնութիւն չէ գոյացած. սակայն արդէն, Նախագիծ մը պատրաստուած է կղերականներու յանձնախումբի մը կողմէ: Այս նախագիծը պիտի ենթարկուի երկու կողմերու քննութեան եւ հաւանութեան:*

*Թէեւ նախագծին մասին որեւէ տեղեկութիւն չէ հաղորդուած, սակայն կարգ մը շրջանակներ կը կարծեն գիտնալ նախագծին գլխաւոր կէտերը:*

*Կաթոլիկ կազմակերպութեանց դերը եւ գործունէութեան սահմանները ճշգրիտ կերպով պիտի սահմանուին: Կաթոլիկ երիտասարդներու կազմակերպութիւնները վերջապէս լուծուած պիտի մնան: Ասոր փոխարէն, երիտասարդ ֆաշիստներու կրօնական դաստիարակութեան ուժ պիտի տրուի, Վատիկանը գոհացնելու չափ: Ուրիշ կաթոլիկ կազմակերպութիւններ պիտի մնան կղերականներու ղեկավարութեան տակ:*

## ԱՅՑ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԳԵՐԵԶՄԱՆԻՆ

Շապին Գարահիսարի եւ շրջ. Ռազմիկ Հայր. միութեան կողմէ այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին: Մուտք գերեզմանատան Gambettaի դուռէն, 96 division.

Կը խօսին քաղաքական կուսակցութեանց ներկայացուցիչները:

Կը հրաւիրուին հայրենակիցներ:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN